M. H. Darbinyan-Melikyan, Դիտողություններ Հովհաննես Դրասխանակերտցու "Պատմութեան" վերաբերյալ [Observations Relating to Hovhannes Drasxanakerts'i's *History*], from *Patma-banasirakan handes [Historico-Philological Journal]*, 3(1981), pp. 154-164, in 11 pdf pages.

# ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՀՈՎՀԱՆՆԵՍ ԴՐԱՍԽԱՆԱԿԵՐՏՑՈՒ «ՊԱՏՄՈՒԹԵԱՆ» ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Մ. Հ. ԴԱՐԲԻՆՅԱՆ-ՄԵԼԻՔՅԱՆ

*Հովհաննես Դրասխանակերտցու «Պատմութիւն Հայոց»-ը պատկանում է հայ միջնադարյան պատմագրության կարևորագույն հուշարձանների թվին։ Այս երկի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Հովհաննես կաթողիկոսը իր ժամանակի ամենակրթված անձնավորություններից մեկն էր։ Նա շատ լավ գիտեր Սուրբ գիրքը, որը նրա «Պատմության» շարադրանքի ընթացքում ծառայում էր որպես օրինակների, բարոյախոսությունների և ոճական պատրաստի նմուշների աղբյուր։ Նրան քաջ հայտնի էին իր նախորդների բոլոր պատմագրական աշխատությունները, չնայած նա օգտվում էր դրանցից ոչ հավասարապես և տարբեր ձևով։ Իր «Պատմության» մեջ նա գրի է առել նաև բանավոր կամ գրավոր ճանապարհով իրեն հասած մարտիրոսություններն ու վարքերը։ Վերջապես, Դրասխանակերտցու ստեղծագործությունը ցույց է տալիս նրա ծանոթ լինելը հայ թարգմանական փիլիսոփայական և քերականական աշխատություններին։ Այդ տեսակետից նրա գործը մեծ հետաքրքրություն է ներկայացնում և՛ ամբողջությամբ վերցրած, և՛ առանձին մանրամասներով։*

*Սույն հոդվածը նպատակ ունի ինչ-որ չափով բացատրել և ճշգրտել նրա «Պատմության» մեջ տեղ գտած որոշ փաստեր, արտահայտություններ ու բառեր, որոնք կարոտ են նոր լուսաբանության։*

*Հայտնի է, որ Հովհաննես Դրասխանակերտցու երկը բաժանվում է երկու մասի՝ բանաքաղային և ինքնուրույն, որտեղ հեղինակը նկարագրում է ժամանակակից իրադարձությունները։ Միշտ չէ, որ հնարավոր է ճշտել բանաքաղային մասի աղբյուրները, քանի որ այնտեղ բերված մի շարք փաստեր հեղինակին նախորդող պատմիչներից և ոչ մեկը չի նշում։ Նման փաստերի թվին է պատկանում Երևանի ճակատամարտի մասին վկայությունը։*

*Հետագա պատմիչներից այդ փաստին անդրադառնում է միայն Սամվել Անեցին. «ՌԿ (660), Երեւանու կռիւն, յորում զգիարդն գտցես՝ առ պատմագրութիւնս առաջնոցն՝ Շապուհ և Ասողնիկ յիշեն»[1]։ Ինչպես արդարացիորեն ենթադրում է Մ. Տեր-Մովսիսյանը, Սամվել Անեցու իրական աղբյուրը եղել է Հովհաննես Դրասխանակերտցին[2]։*

*Հենվելով Սամվել Անեցու վրա, հայագիտության մեջ առ այսօր Երևանի ճակատամարտի ժամանակը ընդունված է համարել 658 կամ 660 թ[3]։ Ստորև բերվող փաստերը ցույց են տալիս, որ Անեցին օգտվել է աղճատված սկզբնաղ-*

---

1 *«Սամուէլ քահանայի Անեցւոյ՝ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ, 1893, էջ 83։*

2 *«Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ». ի լոյս ածին Գ. Տեր-Մկրտչեան և Մեսրոպ եպիսկոպոս, Էջմիածին, 1921, էջ VI։*

3 *Ղ. Ալիշան, Այրարատ, Վենետիկ, 1880, էջ 293—300։ Թ. Հակոբյան, Երևանի պատմությունը, Երևան, 1969, էջ 196—199։*

բյուրից և հիշյալ թվականը իրականությանը չի համապատասխանում։ Երևանի ճակատամարտի ժամանակը որոշելու փաստական սկզբնաղբյուրը Դրասխանակերտցու «Պատմությունն» է, որին և դիմում ենք։

Անաստաս Ակոռեցի կաթողիկոսի (661—667 թթ.) կողմից Սրուճում Դավիթ Դվնեցու մկրտության մասին պատմելուց հետո Դրասխանակերտցին գրում է. «...զկնի ամաց իսկ[4] ի Դվին քաղաքի ընկալաւ զմարտիրոսական պսակն։ Յայնմ ժամանակի ասեն լինել զկռիւն, որ ի քաղաքագիւղն Երևանի...»[5]։ Փոքր-ինչ հետո նա կրկին անդրադառնում է Դավիթ Դվնեցու մահվան հանգամանքներին. «Եւ զկնի Մահմէտի այլ ոստիկան ի Հայս առաքեցաւ՝ Աբդլլահ անուն... Այս Աբդլլահ զնորահաւատ Դաւիթ, զոր յառաջագոյն յիշատակեցաւ առ ի մէնջ, ըմբռնեալ... ի փայտի զնա բևեռակապ պնդէր, և նետաձիգ ի սիրտս սրբոյն արարեալ՝ ի քրիստոսի զհոգին աւանդէր։ Զայսու ժամանակաւ լինի ապա կռիւն ի Վարդանակերտի...»[6]։

Այս քաղվածքներից երևում է, որ Դրասխանակերտցին ժամանակագրական տեսակետից շատ մոտ իրադարձություններ է համարում Դավիթ Դվնեցու մահը, Երևանի, ապա Վարդանակերտի ճակատամարտերը, որոնք տեղի են ունեցել արաբ ոստիկան Մահմեդի և նրան փոխարինող Աբդալլահի ժամանակ։ Դավիթ Դվնեցու մահվան տարեթիվը ճշտված է Ի. Վ. Աբուլաձեի կողմից։ Դա 703 թ. հունվար ամսի 22-ն է, երկուշաբթի օրը[7]։

---

4 «Զկնի ամաց իսկ»-ի փոխարեն սպասելի էր՝ «զկնի ամաց ինչ»։

5 «Պատմութիւն Հայոց Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ», Մոսկվա, 1853, էջ 52—53։

6 Դրասխանակերտցի, էջ 54։

7 И. В. Абуладзе, Грузино-армянские литературные связи в IX—X вв. Исследование и тексты, Тбилиси, 1944, стр. 167 (վրացերեն. վերոհիշյալ աղբյուրը մեզ մատնանշել է Պ. Մուրադյանը, որին հայտնում ենք մեր շնորհակալությունը)։ Հայսմավուրքում Դավիթ Դվնեցու հիշատակի օրը համարվում է մարտի 31-ը։ Վկայաբանության որոշ ձեռագրերում նշվում է. «Կատարեցաւ սուրբ վկայն Քրիստոսի Դաւիթ, որ օր քսան և երեք էր արեգ ամսոյ, յաւուր երկուշաբթու» («Սոփերք հայկականք», հ. ԺԹ, Վենետիկ, 1854, էջ 95—96)։ Մյուս դեպքերում նշանակված է արեգի 23-ը՝ «երկուշաբթի աւագ զատկի», այսինքն Դավթի վկայության օրը մարտի 31-ն է, զատկական շաբաթի երկուշաբթի օրը։ Մի շարք ձեռագրեր Դավթի մահը դնում են 676, մյուսները՝ 693 թ. (Օրմանյան, Ազգապատում, հ. Ա, Կ. Պոլիս, 1912, էջ 777)։ Առաջին թվականը դժվար է հասկանալ, քանի որ 676 թ. զատիկը ապրիլի 6-ին էր, սակայն 693-ը բացատրելի է, այդ թվականին զատիկը մարտի 30-ին էր (տե՛ս Հ. Ս. Բադալյան, Օրացույցի պատմություն, Երևան, 1970, էջ 437)։ Այս հանգամանքով էլ փաստարկվում է 693 թ. Դավթի վկայություններից մեկում. «յամի Տեառն 693, և ի թուին Հայոց ՃԽԲ, ի մարտի 31, քանզի զատիկն էր յայնմ տարւոջ ի մարտի 30»։ Տարեթիվը դրվում է Հովհաննես Սարկավագի անշարժ տոմարով, երբ նոր տարին՝ նավասարդի 1-ը, համապատասխանում է օգոստոսի 11-ին, իսկ արեգի 1-ը՝ մարտի 8 կամ 9-ին (+23=31 մարտի)։ Հենց այս պատճառով էլ, հավանաբար, Մ. Չամչյանը Դավթի մահը դնում է 693 թ. մարտի 31-ին (Մ. Չամչյան, Պատմութիւն Հայոց, հ. Բ, Վենետիկ, 1785, էջ 377)։ Մ. Օրմանյանը հավանական է համարում Դվնեցու մահվան օրը «701 ապրիլ 4-ին դնել՝ զատկին երկրորդ օրվան հիշատակությունը պինդ բռնելով և արեգի ԻԳ (23) թվականը մարգաց Գ (3) փոխելով...», արեգի ԻԳ համարելով գրչական սխալ (Մ. Օրմանյան, Ազգապատում, հ. Ա, էջ 777)։ Սակայն շատ ավելի ճիշտ կլիներ «զատկին երկրորդ օրվան հիշատակությունը պինդ բռնելով» կանգ առնել 704 թ. մարտի 31-ի վրա, քանի որ 152 (ապրիլ 703—մարտ 704) թ. զատիկը հանդիպում է մարտի 30-ին (տե՛ս „Recherces sur la chronologie arménienne technique et historique", par M. Edouard Dulaurier, Paris, 1859, p. 241)։ Ժամանակի տեսակետից էլ 704 թ. մարտի 31-ը ավելի մոտ է Աբուլաձեի կողմից ճշտված Դավթի մահվան տարեթվին՝ 703-ի հունվարի 22-ին։

*Երկրորդ իրադարձությունը, որն ըստ Դրասխանակերտցու ժամանակով մոտ էր Դվինեցու մահվան թվին և, հետևաբար, մոտ էր նաև Երևանի ճակատամարտին՝ Վարդանակերտի կռիվն է։ Վերջինս արդի պատմագրությունում ևս թվագրվում է 703 թ.։ Այսպիսով, մենք կարող ենք Երևանի ճակատամարտի համար նույնպես ընդունել 703 թ.։*

*Մեր պատմիչներից ոչ մեկը չի տալիս որևէ ստույգ թվական Վարդանակերտի ճակատամարտի մասին։ Մ. Չամչյանը*[8] *Վարդանակերտի կռիվը դնում է 694 թ., քանի որ Դվինեցու մահվան տարին համարում է 693-ը։ Առաջին անգամ Վարդանակերտի կռիվը 703-ով է թվագրում ֆրանսիացի հայագետ Սեն Մարտենը*[9]*։ Մ. Օրմանյանը*[10] *Վարդանակերտի պատերազմը դնում է 703-ի հունվարին (նույն թվագրումը ընդունում են Լեոն*[11]*, Բ. Առաքելյանը*[12]*), Ա. Տեր-Ղևոնդյանը*[13] *դնում է 703-ին, առանց ամիսը նշելու, իսկ Ա. Նալբանդյանը՝*[14] *703-ի դեկտեմբերին։ Այժմ փորձենք, հենվելով աղբյուրների վրա, ավելի ստույգ որոշել, թե որ ամսին է տեղի ունեցել Վարդանակերտի կռիվը։ Այդ նպատակով կանգ առնենք 700—704 թթ. տեղի ունեցած իրադարձությունների վրա*[15]*։*

*Մահմատ-Մուհամմադ իբն Մրվան իբն Հակամ, խալիֆ Աբդ ալ-Մալիքի եղբայրը, դեռևս 693 թ. նշանակվել էր Ջազիրեի, Ազարբայջանի և Արմինիայի կառավարիչ, սակայն լոկ 699 թ., բյուզանդական կայսր Տիբերիոսի (698—705 թթ.) արշավանքին ի պատասխան, շարժվեց դեպի Հայաստան*[16]*։ Մինչև 700 թ. նա ամայացնում է Փոքր Ասիայի սահմանամերձ մարզերը, ապա Աբդ ալ-Մալիքի իշխանության 16-րդ տարում հարավից՝ Ջերմաձորով (Մոկս) մտնում է Հայաստան*[17]*։ Աբդ ալ-Մալիքի 16-րդ տարին համապատասխանում է հիջրայի 81 (=700 թ. փետրվարի 26—700 թ. մարտի 15) և հայոց 148—149 (=700 թ. մարտ/700 թ. ապրիլի 6—701 թ. ապրիլի 4) թթ., այսինքն Մու-*

---

8 *Պատմութիւն Հայոց, հ. Բ, էջ 378։ Նրան հետևում է Ղ. Ինճիճյանը (Հնախօսութիւն աշխարհագրական Հայաստանեայց աշխարհի, հ. Ա, Վենետիկ, 1835, էջ 445)։*

9 Memoires historiques et geographiques, 1, Paris, 1818, p. 155։ *Նշենք, սակայն, որ նույն հատորի 340-րդ էջում նա, հետևելով Չամչյանին, Վարդանակերտի ճակատամարտը թվագրում է սխալ՝ 694-ով։*

10 *«Ազգապատում», հ. Ա, էջ 781։*

11 *«Հայոց պատմություն», հ. Բ, Երևան, 1947, էջ 383—384։*

12 *«Հայերի ապստամբությունը արաբական լծի դեմ 703 թ.», ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1941, № 5—6, էջ 57—60։*

13 «Армения и арабский халифат», Ереван, 1977, стр. 75.

14 *«Արաբ ոստիկանները Հայաստանում», ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1956, № 8, էջ 85։*

15 *Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանը բավականաչափ հանգամանալից է լուսաբանված Ա. Տեր-Ղևոնդյանի* «Армения и арабский халифат» *մենագրությունում։ Մենք միայն փոքր-ինչ ավելի մանրամասն կանգ կառնենք 700—704 թթ. պատմական դեպքերի վրա։*

16 А. Мюллер, История ислама, т. II, СПб., 1895, стр. 91. А. Тер-Гевондян *նշվ. աշխ., էջ 72։*

17 *«Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս. Պետերբուրգ, 1887, էջ 19—20։ Սույն տեղեկությունները Ասողիկը նրանից է վերցրել (Ստեփաննոս Տարոնեցի Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 123)։* А. Тер-Гевондян, *նշվ. աշխ., էջ 73—74։*

Համադ իբն Մրվանի Հայաստան ներխուժելու ժամանակը ընկնում է 700 թ. մարտից 701 թ. հունիս ամիսը։ Երկու տարվա ընթացքում արաբները պատերազմ էին մղում երկիրը հնազանդեցնելու համար։ Այս իրողությունը հաստատվում է իբն ալ-Ասիրի տվյալներով, համաձայն որի հիջրայի 82 թ. (701 թ. փետրվարի 14—702 թ. փետրվարի 4) Մուհամմադը նվաճում է Հայաստանը[18]։

Այդ թվականներին է տեղի ունենում նաև Բագրևանդի Սուրբ Գրիգորի վանքի գրավումն ու թալանումը և սկսվում Սևանա կղզու պաշտպանումը։ Դատելով Ղևոնդ Երեցի պատմածից («եւ զկնի երկու ամաց ի գլուխ ամբարշտութեան հասեալ՝ փսխէր մահաբեր թոյնսն, նիւթէր ի վերայ ուխտին Սրբոյն Գրիգորի զմահ»)[19] վանքի գրավումն ու կողոպուտը կատարվել է 702 թ. առաջին կեսին, քանի որ դրանից անմիջապես հետո նա գրում է, որ Մուհամմադը վերադառնում է Սիրիա[20]։

Հայտնի է, որ 702 թ. ամռանը խալիֆ Աբդ ալ-Մալիքը նրան շտապ հետ էր կանչել Հայաստանից՝ իր իշխանությանը սպառնացող արաբ զորապետ Աբդուրրահմանի գլխավորած ապստամբության պատճառով[21]։ Այդ ժամանակ արաբական զորքերը, մասնակիորեն թե ամբողջությամբ, դուրս են բերվում Հայաստանից[22]։ Այս կապակցությամբ, ամենայն հավանականությամբ, ընդհատվում է նաև Սևանա կղզու բերդի պաշարումը։ Դրասխանակերտցու համաձայն «իսկ Սևան կղզի՝ որ ի ծովակին Գեղամայ, թէպէտ և յիսկզբան նուագի անդ ոչ ըմբռնեցաւ ի ձեռս նորա, սակայն զկնի երկեամ մի ամաց մատնեցաւ ի ձեռս նորա»[23], այսինքն Մուհամմադը երկու անգամ է պաշարել Սևան ամրոցը, երկրորդ անգամ Սիրիայից վերադառնալուց հետո։

Դեյիր ալ-Ջամաջիմի ճակատամարտից (702 թ. հուլիսի 12) անմիջապես հետո Մուհամմադ իբն Մրվանը վերադառնում է Հայաստան և մինչև տարվա վերջը գրավում է երկիրը[24]։ 702 թ. երկրորդ կեսին էլ տեղի է ունենում Սևանա բերդի երկրորդ պաշարումը։ Մովսես Կաղանկատվացու վկայությամբ Մուհամմադը «դայ պաշարէ զՍևան ծովապատն բերդ ամ Գ և ապա առնու զայն...»[25]։ Կաղանկատվացին տալիս է Սևանա կղզու պաշարման և գրավման տարիների ընդհանուր ժամանակամիջոցը (ի դեպ նրա «Պատմության» այս գլխում շատ սեղմ են ներկայացված մեկուկես տասնամյակի իրադարձությունները)։

Սամվել Անեցին Սևանա բերդի գրավումը դնում է 703 թ.[26]։

Հենց այդ ժամանակ, այսինքն Սևանա բերդի առումից հետո, 703 թ. հունվարի առաջին կեսին, երբ արաբները կրկին գրավում են Դվինը և Արա-

---

18 Նույն տեղում, էջ 73։ «Արաբացի մատենագիրները Հայաստանի մասին», հավաքեց և թարգմանեց Բագրատ Խալաթյանցը, Վիեննա, 1919, էջ 130։

19 Ղ և ո ն դ, էջ 20։

20 Նույն տեղում, էջ 23։

21 W e i l, Geschichte der Chalifen, I, Mannheim, 1846, S. 455.

22 A. М ю л л е р, նշվ. աշխ., էջ 91։

23 Դ ր ա ս խ ա ն ա կ ե ր տ ց ի, էջ 53։

24 A. М ю л л е р, նշվ. աշխ., էջ 92։

25 Մ ո վ ս ե ս Կ ա ղ ա ն կ ա տ ո ւ ա ց ի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Մոսկվա, 1880, էջ 257։

26 Ս ա մ վ ե լ Ա ն ե ց ի, էջ 65։ Վ ա ր դ ա ն Ա ր և ե լ ց ի, Պատմութիւն տիեզերական, Մոսկվա, 1861, էջ 90։

րատյան դաշտը ու տանջամահ անում Դավիթ Դվնեցուն, տեղի է ունեցել նաև Երևանի ճակատամարտը։

Հայաստանի նվաճումն ավարտելով Մուհամմադը մեկնում է Սիրիա, իսկ մինչ այդ «ձեթող յաշխարհքս Հայոց իշխան փոխանակ իւր յիսմայելացւոցն. որոյ խորհուրդ վատ ի մէջ առեալ բառնալ զազատախումբ տոհմն յաշխարհէս Հայոց՝ նոցին հեծելովք»[27]։ Այդ ոմն իսմայելացու անունը պահպանվել է Դրասխանակերտցու մոտ. «Եւ զկնի Մահմեդի այլ ոստիկան ի Հայս առաքեցաւ՝ Աբդլլահ անուն»[28], ինչպես նաև Դավիթ Դվնեցու վկայաբանության մեջ. «Եւ հասեալ ի ժամանակս Սահակայ Հայոց կաթողիկոսի և Սմբատայ Բագրատունւոյ Հայոց իշխանի, յորում տաճիկ տիրեալ ունէին զաշխարհն Հայոց, և առաջնորդ զօրուն որ ի Հայս Աբդլայս»[29]։ Աբու Շայխ իբն Աբդալլահը, որը հայկական աղբյուրներում հիշվում է պարզապես Աբդալլահ[30], Մուհամմադ իբն Մրվանի տեղակալ է կարգվում հիջրայի 82 (701 թ. փետրվարի 14—702 թ. փետրվարի 4)[31] թ. և Մուհամմադի Սիրիա վերադառնալուց հետո նրա լիակատար կառավարման տակ է թողնվում Հայաստանը։ Ինչպես երևում է վերը շարադրվածից, այդ տեղի է ունենում 703 թ., իսկ Ղևոնդ պատմիչի հաստատմամբ՝ գարնանը։ Նույն պատմիչի վկայությամբ, նախարարական դասի ոչնչացման Աբդալլահի մտադրությունը հայտնի է դառնում Հայաստանի իշխան Սմբատ Բագրատունուն (701—726), որը ստիպեց նրան և նախարարների մի մասին իրենց այրուձիով Բյուզանդիա տեղափոխվելու վճիռ կայացնել։ Արաբական զորքը, հետապնդելով նրանց, հասնում է Վարդանակերտ (ուր գտնվում էին արդեն հայ նախարարները) և ճակատամարտի բռնվելով ծանր պարտություն է կրում. «Քանզի էին աւուրք ցրտաշունչ սառնամանեաց»[32]։ Արարատյան դաշտում այդպիսի ցրտեր և սառցակալում կարող է լինել դեկտեմբեր—հունվար ամիսներին, հետևաբար Վարդանակերտի ճակատամարտը կարելի է թվագրել կամ 703 թ. դեկտեմբերի վերջերին, ինչպես վարվում է Ա. Նալբանդյանը[33], կամ հաջորդ՝ 704 թ. հունվարի առաջին կեսին (հիջրայի 84 թ.=703 թ. հունվարի 24—704 թ. հունվարի 13), որին համապատասխանում է նաև Թեոփանեսի վկայությունը. «Այդ թվականին (6195 մ. թ.=703 թ. սեպտեմբեր—704 թ. սեպտեմբեր) հայ նախարարները, ապստամբելով սարակինոսների դեմ, սպանեցին համարյա բոլոր նրանց, որ գտնվում էին իրենց

---

27 А. Тер-Гевондян, նշվ. աշխ., էջ 74։ Ղևոնդ, էջ 23։

28 Դրասխանակերտցի, էջ 54։

29 «Սոփերք Հայկականք», հ. ԺԹ, էջ 89։

30 Ա. Նալբանդյանը արաբական աղբյուրների Աբու Շայխին և հայկականների՝ Աբդլլային համարում է տարբեր անձինք, ընդ որում վերջինս երկու անգամ է եղել Արմինիայի ոստիկան՝ 700—701 թթ. և 703—704 թթ., իսկ Աբու Շայխը՝ 701—703 թթ. («Արաբ ոստիկանները Հայաստանում», ՀՍՍՀ ԳԱ «Տեղեկագիր» (հաս. գիտ.), 1956, № 8, էջ 107)։ Ա. Տեր-Ղևոնդյանի ենթադրությամբ, հավանական է, որ դրանք միևնույն անձնավորություններն են (նշվ. աշխ., էջ 74, 271)։ Սակայն Ա. Նալբանդյանի տեսակետը ավելի է համապատասխանում հայկական աղբյուրների տվյալներին։

31 А. Тер-Гевондян, նշվ. աշխ., էջ 74։ «Արաբացի մատենագիրները Հայաստանի մասին», էջ 130։ Նշենք, որ համաձայն Իբն ալ-Ասիրի, նույն հիջրայի 82 թ. հայերը սպանել են Աբու Շայխին, սակայն, ավելացնում է նա, «այլք պատմում են, որ նա սպանեցաւ 83 թ.»։

32 Ղևոնդ, էջ 25։ Ըստ Չամչյանի «...զերծաւ միայն Աբդլլայ ոստիկան քանի մը արամբք» (Պատմութիւն Հայոց, հ. Բ, էջ 378)։

33 «Արաբացի ոստիկանները...», էջ 85։

երկրում։ Մուհամմեդը արշավում է ապստամբների դեմ, ոչնչացնում նրանց մեծ մասին և Հայաստանը ենթարկում է սարակինոսներին»[34]։

Իբն ալ-Ասիրը հիջրայի 84 թ. տակ հիշում է Մուհամմադի Հայաստան կատարած արշավանքի մասին, ընդ որում դրանից հետո խոսում է նաև դեպի Հայաստան կատարած մի այլ արշավանքի մասին՝ հիջրայի 85 թ. (704 թ. հունվարի 14—705 թ. հունվարի 1)[35]։ Քանի որ 703 թ. գարնանը և Սմբատ Բագրատունու ապստամբության ժամանակ Մուհամմադը Հայաստանում չէր, Իբն ալ-Ասիրի՝ հիջրայի 84 թ. արշավանքի վերաբերյալ վկայությունը կարելի է վերագրել պատերազմական այն գործողություններին, որ նա մղում էր Հայաստանում 702 թ. (հիջրայի 83 թ.) երկրորդ կեսին և 703 թ. (հիջրայի 84 թ.) առաջին ամիսներին, իսկ հիջրայի 85 թ. արշավանքը՝ Վարդանակերտի ճակատամարտին։

Այսպիսով, Վարդանակերտի ճակատամարտը տեղի է ունեցել 703 թ. դեկտեմբերի վերջին—704 թ. հունվարի սկզբին։

Վերոգրյալի հիման վրա փորձենք այժմ ճշտել կաթողիկոս Սահակ Ձորափորեցու մահվան տարեթիվը։ Վարդանակերտի ճակատամարտից հետո, ինչպես նշում է Ղևոնդ պատմիչը, Սահակ կաթողիկոսը հայ նախարարների խնդրանքով ընդառաջ է գնում Մուհամմադին, որպեսզի կանգնեցնի նրա ներխուժումը Հայաստան, բայց խառանում հիվանդանում և վախճանվում է[36]։ Նրա մահը պետք է դնել 704 թ. գարնանը, քանի որ Վարդանակերտի ճակատամարտը տեղի էր ունեցել 703—704 թթ. ձմռանը[37]։

Հայտնի է, որ Սահակը կաթողիկոսական գահ է բարձրացել 677 թ. և «...եկաց... յաթոռ հայրապետութեան ամս Իէ (27)...»[38]։ Հովհ. Դրասխանակերտցին կաթողիկոսների իր ցանկում Սահակի մահվան տարին չի նշում, բայց արձանագրում է նրա հաջորդի՝ Եղիշեի, աթոռակալության սկիզբը. «Տէր Եղիայ ի գաւառէն Եղիովտա, ի գեղջէն Արճիշոյ, եպիսկոպոսութեան Բզնունեաց ի ՃԺԲ (112=663) թուին Հայոց յաջորդեաց զաթոռ հայրապետութեան Հայոց ամս ԺԳ (13)»[39]։ Հայոց տոմարի ՃԺԲ թվականը ակնհայտ դրչական վրիպակ է, որը ուղղելու հնարավորություն է ընձեռում Ասողիկը։ Վերջինս, ի տարբերություն Դրասխանակերտցուն ժամանակով մոտ կանգնած այլ պատմիչների, օգտագործում է ոչ միայն Հովհ. Դրասխանակերտցու «Պատմությունը», այլև նրա կաթողիկոսների ցանկը. «Իսկ զկնի տեառն Սահակայ ի ՃԾԸ (709) թուին յաջորդէ զաթոռն Եղիայ ի գեղջէ Արճիշոյ յԱղիովտէ, յեպիսկոպոսութենէ Բզնունեաց՝ ամս ԺԳ (13)»[40]։ Սույն երկու քաղվածքների համադրությունը ցույց է տալիս, որ մենք գործ ունենք Ժ—Ծ և Բ—Ը տառերի շփոթու-

---

[34] Dulaurier, Recherches..., p. 241.

[35] А. Тер-Гевондян, նշվ. աշխ., էջ 75, ծան. 21։

[36] Ղևոնդ, էջ 28—29։

[37] Մ. Օրմանյանը նրա մահվան տարին է համարում 703 թ. ամառը, Վարդանակերտի ճակատամարտը դնելով 703-ի հունվարին («Ազգապատում», հ. Ա, էջ 781)։

[33] Դրասխանակերտցի, էջ 55։

[39] Սամուէլ Անեցի, էջ 271։

[40] Ասողիկ, էջ 102։

թյան հետ. թվականը պետք է ուղղել ՃՄԲ=152=703 թ. հունիսի 4—704 թ. հունիսի 3)[41]։

Այսպիսով, Սահակ կաթողիկոսը մահացել է Վարդանակերտի ճակատամարտից, այսինքն՝ 704 թ. հունվարից հետո, բայց մինչև հունիս, որը համընկնում է նրա կաթողիկոսության 27 տարվան։

* * *

Հովհաննես Դրասխանակերտցու «Պատմության» մեջ առանձին բառեր և արտահայտություններ են հանդիպում, որոնք արժանի են հատուկ քննության։

Պատմելով Յուսուֆ ոստիկանի գերությունից իր փախչելու մասին, նա գրում է. «Իսկ ապա այնուհետև հարկեցա ես խնդրել ելս հրաման թողութեան յոստիկանէն՝ որպէս ոմն երբեմն ի սանդարամետէն Պրոտորիադայ»[42]։ Մովսես Խորենացու «Պատմության» մեջ մի արտահայտություն որոշ չափով նման է վերոհիշյալին. «Եւ ոչ խնդրել հրաման պատասխանւոյ ի սանդարամետապետէն Պրոդեիադայ[43] այլ ուսանել զօրութիւն պէսպէս իմաստից ի նոր Պղատոնէն»[44]։ Չնայած վերոբերյալ հատվածների նմանությանը, որն արտահայտվում է երկուսի մեջ միևնույն բառակապակցությունների օգտագործմամբ, իմաստային առումով նրանք բոլորովին տարբեր են։ Կարելի էր ենթադրել, թե ընդգծված բառերը Դրասխանակերտցին փոխ է առել Խորենացուց, արտահայտելով բոլորովին այլ իմաստ, սակայն ընդգծված բառակապակցությունը Դրասխանակերտցու մոտ կոնկրետ առնչություն ունի ինչ-որ որոշակի իրադարձության հետ։ Խորենացու բնագիրը չի օգնում բացահայտելու «ոմն» անձնավորության ով լինելը և թե ինչ է ակնարկում Դրասխանակերտցին։

Ակնհայտ է, որ երկու պատմիչներն էլ օգտվել են մի աղբյուրից. հետաքրքրական է, որ երկուսի աղբյուրն էլ հանդիսանում է «Պատմութիւն Աղեկսանդրի»[45] երկը, որի մեջ մենք նույն բառակապակցություններին ենք հանդիպում. «...տուր ինձ հրաման պատասխանւոյ... Եւ աղաչէր հրաման պատասխանւոյ... շինեայ քաղաք նշանաւոր գեր ի վերայ Պրոդիադայ կղզւոյ»[46], «...խնդրէր և զՍարապեան տաճարն ըստ հրամանի պատասխանւոյ... շինեաց քաղաք նշանաւոր Պրոդիադայ կղզւոյ»[47]։ Խորենացին «խնդրել հրաման պատասխանւոյ» արտահայտությունը առել է առանց փոփոխության, իսկ Դրասխանակերտցին վերափոխել է այն «խնդրել հրաման ելս թողութեան» ձևով։

---

41 Օրմանյանը այս կապակցությամբ գրում է՝ «Ասողիկի մեջ հայոց 158-ին եղած կը կարդացվի Եղիայի ընտրության թվականը (Աս. 154), որ կըլլա 709 տարին, սակայն ուրիշ տեղ ալ ՃՄԴ գրված կա (Սամ. 276), որ կըլլա 704 և այս տարբերությունները իրավունք կուտան մեզի շատ բծախնդրությամբ չպնդել գրչագիրներու թվատառերուն վրա» («Ազգապատում», էջ 801)։

42 Դրասխանակերտցի, էջ 119։

43 «Պրոդեիադ»-ին Մ. Էմինը նույնացնում է ստորգետնյա (սանդարամետ) թագավորության աստվածի՝ հույների Պլուտոնի և եգիպտացիների Սերապիսի հետ (տե՛ս «История Армении Моисея Хоренского», М., 1858, прим. 515).

44 «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», աշխատասիրութեամբ Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան, Տփղիս, 1913, էջ 346։

45 «Պատմութիւն Աղեկսանդրի Մակեդոնացւոյ», Վենետիկ, 1842։ Խորենացու «Պատմության» և «Աղեկսանդրի պատմության» համապատասխան հատվածների համեմատությունը տե՛ս Г. Халатян, Армянские Аршакиды, М., 1903, ч. II, материалы, стр. 129—130.

46 «Պատմութիւն Աղեկսանդրի», էջ 35—36։

47 Նույն տեղում, էջ 41—42։

Դրասխանակերտցու մեզ հետաքրքրող նախադասության թաքնված իմաստի բանալին է «Աղեկսանդրի պատմության» հետևյալ հատվածը. «22, իսկ նա (իմա Աղեքսանդրը) հարցանէր. Ոյր է պատկերս այս։ Եւ նոքա ասեն, սա է վերջին եղեալ թագաւոր Նեկտանեբոս, որ ի գալ պարսից և ընդ եգիպտացիսն տալ պատերազմ, նտես մոգական կախարդութեամբ, զօրութեանն զաստուածսն եգիպտացւոց ի զօրս թշնամեացն ի մտանելն յԵգիպտոս և ուսեալ զառն՝ի նոցանէ եղեալ մատնումն փախեաւ գաղտաբար և ի խնդրելն մեր զնա և յաղաչել զաստուածսն թէ ուր արդեւք փախեաւ թագաւորն, նա ետ պատասխանի որ ի սանդարամետս ի Սարապեան մեհենին աստուածն այսպէս փախուցեալ թագաւորն ձեր եկեսցէ դարձեալ յԵգիպտոս ոչ ծեր որպէս և երն, այլ մանուկ մատաղ»[48]։

Ոստիկանի մոտ գերության մեջ գտնվելու իր վիճակը Դրասխանակերտցին համեմատում է եգիպտական թագավոր Նեկտանեբոսի վիճակի հետ, որին աստվածները թաքցրել էին ստորգետնյա թագավորությունում, և, ինչպես Նեկտաբենոսը աստվածների օգնությամբ «փախեաւ գաղտաբար» պարսիկներից, այնպես էլ իրեն «վերին օգնականութիւն առ ի նմանէն (այսինքն՝ Յուսուֆ ոստիկանից) կորզեաց»[49]։

Այն հանգամանքը, որ «ի սանդարամետս ի Սարապեան մեհենին» աստծուն Դրասխանակերտցին նույնացնում է «Աղեկսանդրի պատմության» վերը նշված քաղվածքների Պրոդիադի[50] հետ, կրկին հաստատում է Մ. Էմինի՝ Սերապիսին, Պլուտոնին և Պրոդիադին նույնացնող տեսակետի իրավացիությունը։

Այսպիսով, Դրասխանակերտցու «ոմն»-ը եգիպտական թագավոր Նեկտանեբոսն է, «Պատմության» բնագրում «Պրոտորիադ» անունը պետք է ուղղել «Պրոդիադ», ինչ վերաբերում է Խորենացու «սանդարամետապետէն» և Դրասխանակերտցու «սանդարամետէն» բառերին, ապա նրանցից յուրաքանչյուրը իմաստավորվում է յուր ենթատեքստում և սրբագրման կարիք չի զգում։

Դրասխանակերտցին իր «Պատմության» մեջ երկու անգամ օգտագործում է լակոնացի բառը՝ 1. «...և նախ ոսկէհուռ մետաքսէիւք և լակոնացի զարդուք... զնա զարգարեալ...» (էջ 129), 2. «Եւ իբրև հարցափորձ ընդ նոսա լեալ... տալ նոսա խոստանայր... և ծիրանիս և Երևելի լակոնացի և բեհեզս...» (էջ 137)։ Ի՞նչը նկատի ունի Դրասխանակերտցին օգտագործելով «լակոնացի» որոշիչը։ X դարում արխաիզմ կլիներ խոսել լակոնական զարդերի մասին։ Լակոնիա անվանումը պատկանում է հին Հունաստանի պատմությանը, բացի այդ Լակոնիան (Սպարտան) երբեք էլ չի փայլել իր արհեստներով, չնայած հայտնի է, որ մ. թ. ա. V—IV դդ. Սպարտայի վերնախավի ձեռքում կենտրոնացվել են մեծ հարստություններ, իսկ սպարտացի կանայք առանձնահատուկ հակում են ունեցել իրենց զարդարել ճոխ գործվածքներով և թանկարժեք քարերով[51]։

---

48 Նույն տեղում, էջ 46։

49 Դ ր ա ս խ ա ն ա կ ե ր տ ց ի, էջ 119։

50 «Պրոդիադայ կղզւոյ» պետք է հասկանալ որպես «Պրոդիադին պատկանող կղզի»։ Ըստ մի վարիանտի այդ կղզին կոչվում էր Փարիտիս («Պատմութիւն Աղեկսանդրի», էջ 35), ըստ մյուսի՝ Փարոս (Նույն տեղում, էջ 39). անվանման ճշտումը մեր խնդրի մեջ չի մտնում։

51 A r i s t o t, Politique d'Aristot, traduit en francais par J. Barthelemy Saint Hilery, Paris, 1848, t. 2, p. 95, t. 8, p. 428.

Նման տեղեկությունների ենք հանդիպում նաև «Պիտոյից գրքում»[52], որը քաջ հայտնի էր Դրասխանակերտցուն։

Մեր բերած երկրորդ օրինակում «երևելի լակոնացի և բեհեզս» արտահայտությունը բառացի փոխառություն է Աստվածաշնչից՝ «...զառտնին արկանելի եւ զերեւելի լակոնացին. զբեհեզն...» (Եսայի, Գ, 22—23)։ Հայկազյան բառարանում (Ա, էջ 879) լակոնացի=«որ ինչ գտանի յերկիրն անդ լակեդեմոնացւոյ»։ «Զերևելի լակոնացին» արտահայտությունը, հունարենի διαφανῆ λακωνικα (Sept., էջ 570) բառապատճենումն է։ Սակայն Աստվածաշնչի հին եբրայերեն բնագրում պարզ է, որ լակոնական (λακωνικα) բառը լինել չէր կարող, այնտեղ նրան համապատասխանում է wəhaggilıonım: Gelun (higelun)-ը ունի նախ և առաջ «հայելի» իմաստը, «հարթ, ողորկված մետաղյա մակերևույթ»[53]։ Այդպես է թարգմանված այս բառը Աստվածաշնչի ռուսերեն և գրաբար բնագրերում մի քանի անգամ (տե՛ս Ելք, ԼԸ, Ը։ Հակ. Ա, 23։ Կոր. ԺԳ, 12), այդ պատճառով էլ Եսայիայի մեզ հետաքրքրող տունը Աստվածաշնչի անգլո-եբրայերեն զուգահեռ բնագրում թարգմանված է հետևյալ կերպ՝ „23 The glassis and the fine linen“[54]։ Սակայն gelun բառի հունարեն թարգմանությունը λακωνικα, ինչպես նաև արաբական ǧlu բառի նշանակությունը՝ մետաքսյա զգեստ և սիրիական gulınu—զգեստ, հիմք է ծառայել ենթադրելու, որ gelun-ը նաև նշանակում է հագուստի մի տեսակ[55]։ Սույն բացատրությանը համապատասխանում է նաև Ես. Գ. 23-ի ռուսերեն թարգմանությունը՝ «тонкие светлые епанчи» (հայտնի է, որ Աստվածաշնչի կանոնիկ գրքերի ռուսերեն թարգմանությունը կատարված է հին եբրայերեն բնագրից)։ Այսպիսով, Ես. Գ. 23 հունարեն բնագրի λακωνικα նշանակում է հագուստի ինչ-որ տեսակ և ոչ թե այն, ինչ գտնվում է կամ էլ ստեղծած է Լակոնիայում։ Ըստ երևույթին Լակոնիայում սովորույթ կար կրելու բարակ անձրևանոցներ, քողեր, հագուստի ինչ-որ տեսակ, որը ըստ հույն մեկնիչների համապատասխանում էր Աստվածաշնչի եբրայական բնագրի wəhaggilyonım-ին։ Սակայն Դրասխանակերտցին Ես. Գ. 23 օգտագործված «լակոնացին» բառը ընդունել է որպես որոշիչ, քանի որ մեր նշած օրինակներից առաջինում նա խոսում է լակոնական զարդերի մասին։

Մյուսը «ռոճիկ» բառն է, որը հետաքրքրական է այն առումով, թե հատկապես ինչ նշանակությամբ է օգտագործված ներքոհիշյալ հատվածում։ «Իսկ որդի Սփշինի Դեղասն կայ մնա ի Դվին քաղաքի՝ ռոճիկս պատրաստեալ նմա թագաւորին Սմբատայ սուղ ինչ պակաս քան զամ մի»[56]։ Սույն քաղվածքի բո-

52 «Մովսիսի Խորենացւոյ Մատենագրութիւնք», Վենետիկ, 1865, էջ 352։

53 Kurzer Hand-Kommentar zum Alten Testament. Das Buch Yesaya erklart von D. Karl Martu, Tübingen, 1930, S. 45.

54 Hebrew-English old Testament from the Bagster Poliglot Bible. London, 1971, p. 432: Նույն իմաստն է տրվում gelun (higelun) բառին Ed. König-ի Hebraisches und aramäisches Wörterbuch zum Alten Testament բառարանում, Wiesbaden, 1969, S. 60:

55 Kurzer Hand-Kommentar, S. 45. Henri George Liddel and Robert Scott, A Greek-English Lexicon, Oxford, 1968, p. 1025, որտեղ λάκων-ιζω հոդվածում λακωνικόν, το, բառը, հղելով Ես. Գ. 23 բացատրված է որպես կանացի հագուստի մաս, զգեստ, քող։ Տե՛ս նաև W. Gesenius, Hebreaisches und chaldaisches Handwörterbuch uber das Alte Testament, Leipzig, 1834, S. 379.

56 Դրասխանակերտցի, էջ 103։

վանդակությունը հիմք է տալիս ենթադրելու, որ այն «օրական ուտելիք, պարեն»[57] էր, նախատեսված Դեդատի անձնական կարիքների և ոչ թե քաղաքի վերանորոգման համար[58]։ Նրա չափը խիստ որոշակի էր, այլապես հարկ չէր լինի նշելու, որ տվյալ տարում Սմբատը պատրաստել էր ավելի քիչ քան անհրաժեշտ էր։ Իսկ սրանից հետևում է, որ այս ռոճիկ-պարենը առաջին տարին չէ, որ վճարվում էր, այն նախատեսված էր Դվինում նստող արաբական կառավարիչների համար և այդ առումով կարող է համարվել հարկ, հնարավոր է նույնիսկ՝ բնամթերային հարկ։

*Հովհաննես Դրասխանակերտցու «Պատմութիւն Հայոց»-ը մեզ է հասել բազմաթիվ ընդօրինակություններով, որոնցում հանդիպում են բառային աղճատումներ ու գրչական սխալներ, մասամբ առաջացած ընդօրինակողների անուշադրության պատճառով։ Ստորև ներկայացնում ենք դրանցից այնպիսիների ճշգրտումները, որոնց հավաստիությանը չենք կասկածում։*

1. «Այլ և սմա (իմա՝ Խոսրով թագավորը) ևս ի Վահրամայ... փախստեայ անկանի առ Մօրիկ։ Իսկ կայսերն օժանդակեալ Խոսրովայ բազում զօրու հանդերձ՝ սպանանի Վահրամն յԻռայ...» (էջ 39)։ Պետք է ուղղել ի **Ռայ** (ի Ռայ—Իռայ—յԻռայ)։ Խոսքը Հերատի մասին է (այդ անվան ձևերից պարսկ. և արաբ. պահպանվել են Hara, Harah, հայերենում՝ Hrew)[59]։ Սասանյանների ժամանակ այն կարևոր ռազմաստրատեգիական կենտրոն էր թյուրքերի սահմանագլխում[60]։ Խոսելով Հերատի մասին, Դրասխանակերտցին հավանաբար նկատի ունի Սասանյանների արևելյան սահմանները։

2. «Իսկ Աշոտ ոմն հրամանաւ Խոսրովայ հասեալ ի Հայս և դիմեալ ի վերայ՝ խորտակէր զզօրսն Յունաց...» (էջ 43)։ **Աշոտ** անունը պետք է ուղղել **Աշտատ**, Սեբեոսի «Պատմության» բնագրի համապատասխան, որից Դրասխանակերտցին քաղել է այդ վկայությունը. «Իսկ Աշտատ Յեզտահար եկն ի սահմանս Հայոց... Հարին զաւրն յունաց և խորտակեցին կործանմամբ մեծաւ»[61]։ Աշտատ Հեզդեհարը պարսկական բանակի զորավարն էր, որ գործում էր Հայաստանում։ Նա «Քարդարի» կոչումն էր կրում, որ նշանակում է «զորքի հրամանատար»[62]։ Նրա մասին հիշատակում է նաև Միքայել Ասորին. «Իսկ հույների 936 տարում, Հերակլի 15-րդ տարում, Խոսրովի 35-ում, Մուհամմադի 4-ում Շահրբարազն ու Քարդարիգանը պաշարեցին Կոստանդնուպոլիսը»[63]։ Իրականում այդ զորավարի անունը Շահին էր[64]։ Շահինը, Խոսրով

---

57 Հ. Աճառյան, Արմատական բառարան, հ. Ե, էջ 1279—1280։

58 Այս վերջին ենթադրությունը անում է Ա. Տեր-Ղևոնդյանը (տե՛ս Արաբական ամիրայությունները Բագրատունյաց շրջանում, Երևան, 1965, էջ 119, Армения..., стр. 242)։

59 Enciclopedie de l'Islam, Leyde—Paris, 1971, t. 3, p. 181.

60 Տե՛ս Л. Н. Гумилев, Древние тюрки, М., 1967, стр. 132.

61 «Պատմութիւն Սեբէոսի», աշխատասիրությամբ Գ. Վ. Աբգարյանի, Երևան, 1979, էջ 111։

62 Տե՛ս Н. В. Пигулевская, Византия и Иран на рубеже VI—VII вв., М.—Л., 1946, стр. 196.

63 Chronique de Michel le Syrien, editee pour la première fois et traduite en francais par J.-B. Chabot, Bruxell, 1963, t. II, pp. 408, 409—410։ Հմմտ. «Ժամանակագրութիւն Միխայէլի Ասորւոյ Պատրիարքի», Երուսաղէմ, 1871, էջ 295։

64 Տե՛ս Lebeau, Histoire du Bas-Empire, Paris, 1829, t. 10, p. 14, note 34. Chronique de Michel, p. 401.

արքայի զորքերի երկրորդ տաղանդավոր հրամանատարը, զրկվել էր թագավորի համակրանքից և փոխվել միայն շահի մահվան պատճառով[65]։

3. «Վարդանակերտ առիւ մի յիշեցի մեզ» (էջ 54),—պետք է ուղղել «Վարդանակերտի կռիւ մի յիշեցի մեզ»։

4. «Բայց Նսրն... իբրև չուէ երթալ հասանէ ի Նախջաւան քաղաք՝ զետեղեալ ի նմա աւուրս ինչ... տեղի տայ ճաշտութեանց հեթանոսական սովորութեանց» (էջ 179)։ Բնագրում, ինչպես երևում է բովանդակությունից, սկզբնապես եղել է ճեշտութեանց։ Այս ճշգրտումը հաստատվում է Ստեփաննոս Օրբելյանի «Պատմության» համապատասխան հատվածով. «Եւ կացոյց ի վերայ Հայոց ոստիկան մի յիւրոց ծառայիցն Նսր անուն... կրկին չարն և ճեշտասէր քան զՅուսուփ բնակէ աւուրս ինչ ի Նախջաւան»[66]։

5. «...Եւ այնպէս ապա պակասեալ թափեալ հանեալ զոգիսն ի ծոցս մարցն իւրեանց...» (էջ 143)։ «Զոգիսն» բառը պետք է ուղղել «զորդիսն»։

6. «Թերևս զմտաւ ածեալ նորա (այսինքն՝ Շապուհի որդի Աշոտը) զփարթամաշնորհն Յուսուփ, զի գոնէ թէ և նա... գտցէ շնորհս առաջի երկրորդ փառաւորի» (էջ 118)։ Խոսքը ամտվածաշնչյան Հովսեփի մասին է, ուստի Յուսուփ-ը պետք է կարդալ Յովսէփ։

7. «Ապա չուէ դնայ առ թագաւորն ի գաւառն Շիրակ» (էջ 164)։ Առ-ը ավելորդ է։

8. Պատմելով արաբական զորքի կողմից Բյուրական ամրոցի գրավման մասին, Դրասխանակերտցին շարունակում է. «Այս ամենայն եղև յերիքհարիւրերորդի երեսներորդի երկրորդի թուականութեան Թորգոմեան և յԱհկի ամսոյ՝ որ օր տասն էր» (էջ 189), այսինքն 883 թ.։ Այս բացահայտ վրիպակ է, որը հետևանք է Հ և Լ տառերի շփոթի, ուր ՅՀԲ դարձել է ՅԼԲ, այսինքն 372 (+551)=923 դարձել է 332 (+551)=883։ 923 թ. ահեկ ամիսը համապատասխանում էր դեկտեմբերի 6—հունվարի 5, հետևաբար 372 թ. ահեկի 10=923 թ. դեկտեմբերի 15-ին, որը և Բյուրականի ամրոցի արաբների կողմից գրավման օրն է։

Մի շարք աղճատված բառեր հեշտությամբ ճշգրտվում են տարընթերցվածքների օգնությամբ, ուստի հարկ չենք համարում անդրադառնալ։

## ЗАМЕЧАНИЯ К «ИСТОРИИ» ИОВАННЕСА ДРАСХАНАКЕРТЦИ

М. О. ДАРБИНЯН-МЕЛИКЯН

(Резюме)

В статье сделана попытка на основе данных Драсханакертци уточнить, привлекая и другие источники, датировку некоторых событий 700—704 гг., и в частности время битвы при Ереване, а также выяснить значение некоторых выражений и исправить ряд искаженных слов.

---

65 Տե՛ս Л. Гумилев, նշվ. աշխ., էջ 196։

66 «Պատմութիւն նահանգին Սիսական արարեալ Ստեփաննոսի Օրբելեան արքեպիսկոպոսի Սիւնեաց», Թիֆլիս, 1910, էջ 197։